Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


**Խմբագրության հասցեն.**— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*






# ԶՐՈՒՅՑ ԵՐԵՎԱՆ-ԿԻԵՎ ՍՈՑՄՐՑՈՒԹՅԱՆ ԸՆԹԱՑՔԻ ՄԱՍԻՆ

Երևան-Կիև սոցիալիստական մրցությունը գնալով լայն ծավալ է ստանում։ Երկու մայրաքաղաքների աշխատավորներն էլ ձգտում են ժամկետին և պատվով կատարել իրենց ստանձնած պարտավորությունները։

Այժմ էլ, չնայած տարվա ձմեռային եղանակին, մեր մայրաքաղաքում չեն դադարում շինարարական և բարեկարգման աշխատանքները։ Հարկ-հարկի վրա բարձրանում են բնակելի տների, հասարակական ու պետական շենքերի, նորակառույց գործարանների ու ֆաբրիկաների հոյակապ կորպուսները։ Ամենուրեք զրնգում են մուրճերը, բարձրացնող կռունկները անընդհատ քար, կիր, ավազ և այլ տեսակի շինանյութեր են հասցնում կառուցող բանվորներին, ավարտվող շենքերի վրա ամրացվում են վերջին լուսամուտներն ու դռները, կարգի են բերվում և ասֆալտապատվում փողոցներն ու մայթերը։

Եռում է կյանքը դպրոցներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում և գիտա-հետազոտական հիմնարկություններում։ Ձմեռվա պայմաններում նրանց նորմալ աշխատանքի համար ստեղծված են բոլոր հնարավորությունները։ Վերջերս մեր ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսների կազմը համալրվեց նոր, թարմ կադրերով։ Ակադեմիայի կազմում, տարբեր բնագավառների գծով ընտրվեցին 9 նոր անդամներ և հաստատվեցին 13 թղթակից-անդամներ։

Եռ ու զեռի մեջ են քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները։ Բոլոր գործարաններում, ֆաբրիկաներում և արտադրական մյուս օբյեկտներում աշխատավորները համակված են մի մտքով ու զգացումով՝ լարել բոլոր ուժերը, տալ երկրին շատ ու բարձրորակ արտադրանք և հաղթանակով դուրս գալ Երևան-Կիև սոցիալիստական մրցությունից։

Բազմաթիվ արտադրական ձեռնարկություններ հայ ժողովրդի ազգային տոնը՝ Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու 36-րդ տարեդարձը դիմավորեցին իրենց արտադրական պլանները կատարած և գերակատարած։ Երևանի Կոշիկի № 3



ֆաբրիկայի կոլեկտիվը տարեկան պլանը կատարելու հետ միասին մեծ հաջողություններ ձեռք բերեց արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ, տալով ավելի քան մեկ միլիոն ռուբլու տնտեսում։ Ավտոդողերի գործարանի բանվոր-ծառայողները սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու միջոցով հասել են լուրջ հաջողությունների։ Ընթացիկ տարվա անցած 11 ամսվա պլանը կատարվել և գերակատարվել է։ Պլանից դուրս երկիրը ստացել է 13.400 ավտոդող։ Գործարանի առաջավոր շատ բանվորներ արդեն աշխատում են 1957 թվականի հաշվին։

Երևանի խրոմպիկի գործարանը 1956 թվականի անցած 10 ամսվա պլանը կատարել է 108,2 տոկոսով, զգալի չափով իջեցվել է ինքնարժեքը, տնտեսվել է մեծ քանակությամբ հումք և էլեկտրաէներգիա։ Գործարանի շիկացման ցեխի Հ. Ղումաշյանի ղեկավարած բրիգադան արտադրական բարձր ցուցանիշների համար նվաճել է գործարանի միջբրիգադային փոխանցիկ Կարմիր դրոշը։ Արտադրական բարձր ցուցանիշներ է ձեռք բերել «Պոլիվինիլացետատ» գործարանի կոլեկտիվը, որը պլանը կատարել է 104 տոկոսով։

Եռուն աշխատանք է կատարվում «ԿԱՆԱԶ» գործարանի բոլոր ցեխերում և աշխատամասերում։ Այստեղ յուրաքանչյուր բանվոր, բրիգադա և հերթափոխ պայքարում են մրցությունից հաղթանակով դուրս գալու համար։ № 3 ցեխի վերանորոգողների բրիգադան ամբարձիչի վերանորոգումը 6 օրվա փոխարեն կատարեց երկու և կես օրում, որի շնորհիվ ցեխը իր արտադրական պլանը գերակատարեց։

Քաղաքի առանձին արտադրական օբյեկտներ զգալի աշխատանք են կատարում նոր տեխնիկայի կատարելագործման ուղղությամբ, օրինակ, ավտոդողերի գործարանում տեղադրվում է նոր «շպրից» մեքենա, որի գործարկումով աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է 2—3 անգամ։ Ջեթ-օճառ կոմբինատի առանձին ցեխեր ու տեղամասեր հարստացել են նոր տեխնիկայով ու սարքավորումներով։ Տեղադրվել են 2 անցիկային ուղղիչներ, որոնք մշտական էլեկտրական հոսանք են տալիս ջրածնային ցեխին, ձեթի գործարանում տեղադրվել են երեկու նոր մամլիչ մեքենա, որոնց շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

Էլեկտրաէներգիայի խնայողության համար



ծավալված մրցման մեջ լավ ցուցանիշներ ձեռք բերեցին Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը և Ծխախոտի ֆաբրիկան։ 700 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա խնայելու համար կիրովցիները և ծխախոտագործները մրցանակ շահեցին։ Բացի այդ, Կիրովի գործարանը անցած 10 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարելու և գերակատարելու, 939 տոննա հիմնական հումք ու զգալի քանակությամբ օժանդակ նյութեր խնայելու համար, արժանացել է Համամիութենական առաջին կարգի մրցանակի և փոխանցիկ Կարմիր դրոշի։ Այս հանգամանքը նոր խանդավառություն է առաջ բերել գործարանի բանվոր-ծառայողների մեջ։ Նման հաջողություններ են ձեռք բերել Երևանի ուրիշ շատ արտադրական ձեռնարկություններ։ Կան ձեռնարկություններ նաև, որոնք ժամկետից շուտ և հաջողությամբ փակելով իրենց տնտեսական տարին, սկսել են աշխատել 1957 թվականի հաշվին։ Այդպիսիների թվին են պատկանում Դերմատին-մոմլաթի ֆաբրիկայի, «Ռուլեիկ» արտելի կոլեկտիվները և ուրիշները։

Մեր մայրաքաղաքը հարստացավ կապի նոր բաժանմունքներով, որոնք ավելի են բարելավելու աշխատավորության սպասար-

կումը։ Շահագործման հանձնվեց կապի նոր
№ 23 բաժանմունքը, որն ունի լայն հարմա-
րություններ՝ փոստ, միջքաղաքային հեռա-
խոսային կայան, հեռագրատուն, խնայողա-
կան դրամարկղ։ Կապի բաժանմունքներ են
ստեղծվել նաև Կիևյան, Կալինինի, Այգես-
տան փողոցներում։ Շուտով քաղաքի Միկո-
յանի շրջանում կավարտվի ավտոմատ հե-
ռախոսային նոր կայանը, որն ունենալու է
հեռախոսի 2000 համար։

Երկու ռեսպուբլիկաների՝ Հայաստանի և
Ուկրաինայի մայրաքաղաքների սոցիալիս-
տական մրցությունը ուրիշ շատ արժեքավոր
բան է տալու միմյանց, ոչ միայն տնտեսու-
թյան, արտադրության բնագավառում։ Միա-
ժամանակ է՛լ ավելի է ամրապնդվելու հայ և
ուկրաինական եղբայրական ժողովուրդների
բարեկամությունն ու համագործակցությունը։

Վերջերս Երևան ժամանեց Կիևի բժշկական
գիտական աշխատողների մի խումբ։ Նրանք
փորձի փոխանակման նպատակով հանդի-
պում ունեցան Երևանի արյան փոխներարկ-
ման գիտահետազոտական ինստիտուտի աշ-
խատողների հետ։ Հյուրերը ծանոթացան մեր
ռեսպուբլիկայի գիտա-փորձնական աշխա-
տանքների դրվածքին և արժեքավոր առա-



ջարկություններ արեցին արյան փոխնե-
րարկման հարցի շուրջը։

Երևան-Կիև սոցիալիստական մրցությու-
նը մտել է մի նոր, ավելի բարձր փուլի
մեջ։ Մեր մայրաքաղաքի աշխատավորները
ոչ մի րոպե չպետք է հանգստանան իրենց
ձեռք բերած հաջողություններով, ընդհա-
կառակը, նրանք պետք է էլ ավելի լարեն
իրենց ուժն ու կարողությունը և յուրաքան-
չյուր օր նշանավորեն արտադրական նոր,
ավելի բարձր ցուցանիշներով,ի նկատի ունե-
նալով, որ լուրջ, բեղմնավոր ու անձնուրաց
աշխատանք են կատարում նաև իրենց մրր-
ցակիցները՝ Կիևի աշխատավորները։

# 1956 ԹՎԱԿԱՆԻ ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ԲԱՇԽՈՒՄԸ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասը, ավարտելով գյուղատնտեսական աշխատանքները և ամփոփելով տնտեսական տարվա արդյունքները, ձեռնամուխ է եղել մթերային և դրամական եկամուտների վերջնական բաշխմանը։*

*Կենսագործելով Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումները, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները զգալի հաջողությունների են հասել հանրային եկամուտների ավելացման ուղղությամբ։*

*Արտաշատի շրջանի Մրգավան գյուղի «Նոր կյանք» կոլտնտեսության դրամական եկամուտները այս տարի հասնում են 4 միլիոն 500 հազար ռուբլու, անցյալ տարվա 1 միլիոն 688 հազարի դիմաց։*

*Հաջողությամբ կիրառելով այգիների մշակման ագրոտեխնիկան, այս տարի կոլ-*



*տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 102 ցենտներ խաղող, պլանով նախատեսված 75 ցենտների դիմաց։ Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև անասնաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման ուղղությամբ։ Կոլտնտեսությունը արդեն յուրաքանչյուր աշխօրին բաշխել է 30 ռուբլի։ Կոլտնտեսության անդամ Գրիգոր Բաղդասարյանը իր ընտանիքի անդամների հետ միասին վաստակած 1047 աշխօրի դիմաց, որպես ավանս ստացել է 31 հազար 40 ռուբլի դրամ, 181 կգ. պանիր և յուղ, 3000 կգ. խաղող և այլ գյուղատնտեսական մթերքներ։*

*Բարձր եկամուտներ են ստացել նաև կոլտնտեսականներ Սարգիս Նազարյանը, Շավարշ Սարգսյանը և Գուրգեն Հովհաննիսյանը։ Նրանք իրենց ընտանիքների անդամների հետ միասին ստացել են 25—30 հազար ռուբլի դրամ, 250—300 կգ. պանիր և յուղ, 2,5—3 տոննա խաղող։ Գյուղում չկա մի ընտանիք, որը այս տարի կոլտնտեսությունից 8.000 ռուբլուց պակաս դրամական եկամուտ ստացած լինի։ Կոլտնտեսությունը աշխօրերին որպես ավանս բաշխել է մեկ միլիոն 500 հազար ռուբլի դրամ։*

*Սպիտակի շրջանի Մեծ Պարնիի կոլտնտե-*

սությունը ցանքերի խնամքը լավ կազմակերպելու և տեսակավոր սերմացուով ցանք կատարելու շնորհիվ, հացահատիկային կուլտուրաների 848 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 13,5 ցենտներ բերք։ Պետական պարտավորությունները կատարելուց, սերմացուն և ապահովագրական ֆոնդերը առանձնացնելուց հետո, յուրաքանչյուր աշխօրին ավանսի կարգով բաշխվել է 3,5 կիլոգրամ հացահատիկ։ Կոլտնտեսության անդամ Հովսեփ Աքուլյանի ընտանիքը անցած 10 ամիսների ընթացքում վաստակած 1952 աշխօրի դիմաց ստացել է 6832 կիլոգրամ հացահատիկ, 294 կիլոգրամ պանիր, 5760 ռուբլի դրամ, 2 տոննա անասնակեր և այլ մթերքներ։

Իրենց աշխօրերի դիմաց 4—5 տոննա հացահատիկ, 200—250 կիլոգրամ պանիր, 4500 ռուբլի դրամ և բավականին անասնակեր են ստացել նաև կոլտնտեսականներ Ելիբեկ Բաղալյանի, Սիրամ Մարգարյանի, Մկրտիչ Բարսեղյանի և Մարտիրոս Բաղալյանների ընտանիքները։

Կոլտնտեսությունը շաքարի ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով 302 ցենտներ բերք աճեցնելու համար պետությունից որպես պարգև-հավելում ստացել է 187



հազար ռուբլի, որը բաշխվելու է շաքարի ճակնդեղի վրա ծախսված աշխօրերի դիմաց որպես լրացուցիչ վարձատրություն։

Բասարգեչարի շրջանի Կարաիման գյուղի Մոլոտովի անվան կոլտնտեսությունը (նախագահ՝ Իբրահիմ Իսլամով) հացահատիկային կուլտուրաների 810 հեկտար տարածության ամեն մի հեկտարից հավաքել է 15-ական ցենտներ բերք, ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից՝ 22 ցենտներ բերք։ Կովերի կաթնատվությունն այստեղ հասել է 1415 լիտրի, իսկ ոչխարների բրդատվությունը 3,5 կիլոգրամի։

Կոլտնտեսությունը ժամկետից շուտ է կատարել և գերակատարել գյուղատնտեսական մթերքների մթերման և գնման պլանը։ Կոլտնտեսության դրամական եկամուտները կազմում են 2 միլիոն 150 հազար ռուբլի։ Յուրաքանչյուր աշխօրի դիմաց ավանսի կարգով բաշխվում է 7 կիլոգրամ հացահատիկ, մեկ կիլոգրամ կարտոֆիլ, 500 գրամ բանջարեղեն, 150 գրամ պանիր, 30 գրամ յուղ, 2 կիլոգրամ անասնակեր և 10 ռուբլի դրամ։

Աշտարակի շրջանի Ոսկեհատ, Ոսկեվազ և Օշական գյուղերի կոլտնտեսություններում ամեն մի աշխօրի դիմաց որպես ավանս

բաշխվում է 8—10 ռուբլի դրամ, 2—3 լիտր գինի, 1,5—3 կիլոգրամ ցորեն և այլ գյուղատնտեսական մթերքներ։ Այդ կոլտնտեսություններում յուրաքանչյուր աշխօրի արժեքը մանրածախ վաճառքի գներով կազմում է 32—35 ռուբլի, որը կրկնակի անգամ բարձր է 1955 թվականի աշխօրերի արժեքից։

Կարելի է բերել շատ այլ օրինակներ, որոնք ցույց են տալիս, թե ինչպես իրենց ազնիվ ու ջանասեր աշխատանքի շնորհիվ կոլտնտեսականները ստանում են բարձր եկամուտներ։

Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսության այգեգործական բրիգադները աշխատանքը ճիշտ կազմակերպելու շնորհիվ ստացել են խաղողի բարձր բերք։ Այստեղ 1956 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 180 ցենտներ խաղողի միջին բերք, պլանով սահմանված 85 ցենտների դիմաց։ Կոլտնտեսության դրամական եկամուտները 1950 թվականի համեմատությամբ աճել է 4,5 անգամ, իսկ անբաժանելի ֆոնդերը՝ 8 անգամ։ Կոլտնտեսության հանրային հարստության ավելացման հիման վրա տարեցտարի բարելավվում է կոլտնտեսականների բարեկեցությունը։ Միայն ընթացիկ տարում կոլտնտե-



սականների աշխօրերին բաժանվող եկամուտները, անցյալ տարվա համեմատությամբ ավելացել են 2,5 անգամ։ Մեկ աշխօրի միջին արժեքը պետական մանրածախ գներով կազմում է 37 ռուբլի 50 կոպեկ։ Քաղցրաշենցիների արտադրական հաջողությունները արդյունք են այն բանի, որ կոլտնտեսության վարչությունը (նախագահ՝ Ամբակում Գրիգորյան) հատուկ ուշադրություն է դարձնում կոլտնտեսային աշխատանքի կազմակերպման և վարձատրության վրա։

Եկամուտների բաշխումը կոլտնտեսություններում քաղաքական և տնտեսական կարևոր նշանակություն ունեցող գործ է։ Նրա լավ նախապատրաստումը և անցկացումը մեծապես կնպաստի հանրային տնտեսության հետագա զարգացմանը և կոլտնտեսականների բարեկեցության բարձրացմանը։ Մինչև կոլտնտեսությունների բնամթերային և դրամական եկամուտների վերջնական բաշխումը անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն կատարի նյութական արժեքների և դրամական միջոցների ինվենտարիզացիա։ Ինվենտարիզացիայի միջոցով է բացահայտվում կոլտնտեսության ունեցվածքի վատնման փաստերը։ Միաժամանակ այն մոբիլի-

վարժում է կոլտնտեսականներին պայքարելու խնայողության համար։

Ինչպես հայտնի է, կոլտնտեսային հանրային հարստությունը ստեղծվում է արտելի անդամների անձնական աշխատանքով։ Կոլտնտեսության եկամուտների բաշխումը կատարվում է ըստ կոլտնտեսականների վաստակած աշխօրերի։ Այդ փսկ տեսակետից կարևոր նշանակություն ունի եկամուտների բաշխման գործում աշխօրերի ճիշտ հաշվառման դրվածքը և աշխօրերի չռայլումների կանխումը։ Կոլտնտեսություններում դրամամթերային եկամուտների բաշխումից առաջ կոլտնտեսության վարչությունները առաջին հերթին պարտավոր են կատարել պետության հանդեպ ունեցած պարտավորությունները, առանձնացնել անհրաժեշտ սերմացուն, ընտեղծել ապահովագրական և օգնության ֆոնդեր, որից հետո մնացած եկամուտները բաշխել արտելի անդամների միջև՝ ըստ աշխօրերի։

Կոլտնտեսություններում եկամուտների վերջնական բաշխման լավ կազմակերպումն ու անցկացումը մեծ չափով կնպաստի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա շեշտակի վերելքին։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

Լենինականի Զկալովի անվան կարի ֆաբրիկայի երկրորդ ցեխի ագիտատոր Գ. Վարդանյանը ունկնդիրների համար հաճախակի զրույցներ է կազմակերպում արդյունաբերական թեմաների շուրջը։ Բանվորներն ու բանվորուհիները սիրով են լսում նրա զրույցները և աշխույժ հարց ու պատասխանի միջոցով պարզաբանում այն, ինչ հետաքրքրում է իրենց։

Օրերս նա ցեխի աշխատողների հետ զրույց ունեցավ արտադրանքի ինքնարժեքի իջեցման հնարավորությունների մասին։ Ագիտատորը նախ ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանեց, թե Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ինչպիսի կարևորություն է տվել ինքնարժեքի իջեցմանը և ապա մանրամասնորեն պատմեց այն փիթխարի աշխատանքի մասին, որ կա

տարում են արդյունաբերության աշխատող-ները ձեռնարկությունների շահութաբերու-թյունը բարձրացնելու միջոցով սոցիալիստա-կան կուտակումներն անընդհատ ավելացնելու համար։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը,— ա-սաց ագիտատորը,— նպաստում է սոցիա-լիստական կուտակումների ավելացմանը, արդյունաբերության շահութաբերության բարձրացմանը։ Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը,— շարունակում է նա,— հանդի-սանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման վճռական պայմանը։ Գործնականում ապացուցված է, որ արդյունաբերության մեջ ամբողջությամբ վերցրած հումքի, օժանդակ նյութերի, վառե-լիքի, էլեկտրաէներգիայի ծախսերը կազմում են արտադրանքի ինքնարժեքի ավելի քան 70 տոկոսը, նշանակում է արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևո-րագույն աղբյուրներից մեկը հումքի, նյու-թերի, վառելիքի խնայողությունն է։

Նյութերի խնայողության կարելի է հասնել տեխնոլոգիական պրոցեսների անընդհատ կատարելագործման, արտադրական կո-րուստների և մնացորդների կրճատման, ար-տադրվող առարկաների քաշի թեթևացման



ճանապարհով։ Կարևոր նշանակություն ունի թողարկվող արտադրանքի որակի բարելավ-ման հարցը։ Ագիտատորը կոնկրետ օրինակ-ներ է բերում, թե ինչպես բարձրորակ արտա-դրանքը հնարավորություն է տալիս կրճատել իրացման հետ կապված ծախսերը, վերացնել տույժերը և տուգանքները։

Արտադրանքի ինքնարժեքը ձեռնարկու-թյան աշխատանքը բնութագրող որակական կարևոր ցուցանիշ է, նրա մեջ արտացոլվում են տվյալ ձեռնարկության տնտեսական գոր-ծունեության բոլոր կողմերը։ Հետևապես պայքարը արտադրանքի ինքնարժեքի իջեց-ման համար՝ պայքար է ձեռնարկության աշ-խատանքի բոլոր բնագավառների բարելավ-ման համար։ Համաժողովրդական այդ պայ-քարում ամենաակտիվ մասնակցություն ու-նեն բանվորներն ու բանվորուհիները, ինժե-ներա-տեխնիկական աշխատողները և ծառա-յողները։

— Ես համառոտակի թվարկեցի այն ուղի-ները,— շարունակում է ագիտատորը,— ո-րոնց կիրառումով ձեռնարկությունը ի վի-ճակի է ոչ միայն կատարելու, այլև գերակա-տարելու ինքնարժեքի իջեցման պետական առաջադրանքը։ Այժմ այն մասին, թե այդ

ուղղությամբ մեր կոլեկտիվը ինչպես է կատարում իր խնդիրները։

Ինչպես ձեզ հայտնի է, սոցիալիստական մրցության մեջ մեր կոլեկտիվը այս տարի երկրորդ անգամ ճանաչվեց հաղթող և նրան շնորհվեց երրորդ կարգի մրցանակ։

Մեր կոլեկտիվն այս պատվին արժանացավ շնորհիվ այն բանի, որ իր պլանները կատարել էր տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։ Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, մենք հասանք այն բանին, որ 10 ամսում, կատարեցինք 11 ամսվա առաջադրանք, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելով 112 տոկոսով։ Պլանների կատարման հետ միասին լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև ինքնարժեքի իջեցման, հումքի, պետական այլ միջոցների տնտեսման ուղղությամբ։ Միայն ինքնարժեքի իջեցումից առաջացած խնայողությունը կազմում է ավելի քան 400 հազար ռուբլի։

Արտադրության մեջ խստագույն ռեժիմ հաստատելու, հումքը, նյութերը խնայողաբար ծախսելու շնորհիվ տնտեսվել է 24.451 քառակուսի մետր կտորեղեն։

Այնուհետև ագիտատորը համառոտակի թվարկում է այն հնարավորությունները, ո-



րոնց կիրառման միջոցով ֆաբրիկայի բանվոր-բանվորուհիները, ինժեներա-տեխնիկական աշխատողները հասել են այդ հաջողություններին։

Ամենից առաջ կոլեկտիվն աշխատում է համերաշխ, բոլոր ջանքերը գործադրում է պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու, Հայրենիքին ավելի շատ արտադրանք տալու համար։ Մյուս կողմից վերջին մի քանի ամիսների ընթացքում վերակառուցվել են արտադրական նոր կորպուսներ և օժանդակ բաժիններ, գործի են գցվել բարձր արտադրողականություն ունեցող նոր սարքավորումներ։ Նորարարների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, առաջավոր բանվորների ջանքերով ավտոմատացված են արտադրության աշխատատար բազմաթիվ պրոցեսներ։ Ավտոմատացման և նոր տեխնիկայի արմատավորման շնորհիվ, նախորդ տարվա համեմատությամբ, այս տարի ֆաբրիկայի արտադրական կարողությունն ավելացել է ավելի քան 23 տոկոսով։

Խոսելով արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում իրենց ցեխի աշխատողների ամանելիքների մասին, ագիտատորը առաջավորների փորձը նկատի ունենալով ունկնդիրնե-

րին պարզաբանում է, թե ինչպես ռացիոնալ ծախսել գործվածքները, նվազեցնել մնացորդները, ավելի արդյունավետ օգտագործել նյութերը։ Ունկնդիր Շ. Նալբանդյանի պահանջով ագիտատորը պատմեց այն միջոցների մասին, որ կիրառում են առաջավոր ձևողները։ Նա ունկնդիրներին պատմում է Մոսկվայի «Բոլշևիչկա», Լենինգրադի Վոլոդարսկու և Կիևի Լաստոչկինի և Սմիրնովի անվան կարի ֆաբրիկաների առաջավորների փորձի մասին։ Այդ նշանավոր ձեռնարկություններում հիմնական կտորից կարում են տղամարդու կոստյումներ, իսկ մնացորդներից՝ այլ ասորտիմենտի հագուստեղեն (տղայի կոստյում, դպրոցական երեխայի անդրավարտիկ և այլն)։

Վերջում ագիտատորը խոսում է այն մասին, որ իրենց ֆաբրիկայում արդեն արմատավորվել է ձևելու ռացիոնալ մեթոդը, որը հնարավորություն է տալիս համարյա լրիվին օգտագործել կտորները։ Ագիտատորը հանգամանորեն խոսում է նաև այն մասին, թե սոցմրցությունը ինչպիսի խոշոր դեր է խաղում ինքնարժեքի իջեցման գործում։

Ավարտելով իր զրույցը, ագիտատոր Գ. Վարդանյանը պատասխանում է ունկնդիրների հարցերին։

---



# ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Տարեցտարի ծաղկում ու բարգավաճում է Չինաստանի ժողովրդական տնտեսությունը։ Չին ժողովուրդը չտեսնված հաջողությունների է հասել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման գործում։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ Սոցիալիստական և կիսասոցիալիստական սեկտորների համախառն արտադրանքը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ կազմում է 92,9 տոկոս։ Մանր ապրանքային սեկտորը 1949 թվականի 76,8 տոկոսի փոխարեն, այժմ ժողովրդական տնտեսության մեջ կազմում է 6,1 տոկոս, իսկ կապիտալիստական սեկտորը, որը 1949 թվականին կազմում էր 14,6 տոկոս, պակասելով այժմ հասել է 1 տոկոսի։

✪ Չինաստանում եղած 120 միլիոն գյուղական տնտեսություններից 110 միլիոնը, այսինքն՝ 91,7 տոկոսը մտել են գյուղատնտեսական՝ արտադրական կոոպերատիվների մեջ, ընդ որում 35 միլիոն տնտեսություններ

մտել են ցածր տիպի, իսկ 75 միլիոնը, այսինքն՝ մեծամասնությունը բարձր տիպի կոոպերատիվների մեջ։ Չինաստանում այժմ կա մոտ 1 միլիոն գյուղատնտեսական կոոպերատիվ։

✪ Արդյունաբերության համախառն արտադրանքը (ներառյալ ժամանակակից և տնայնագործական արդյունաբերությունը) 1956 թվականի վերջում կհասնի 1957 թվականի համար նախատեսված մակարդակին։ 1957 թվականի համար սահմանված պլանը կգերակատարվի մոտավորապես 15 տոկոսով։

✪ Արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1952 թվականի հետ համեմատած կաճի ավելի քան 60 տոկոսով։ Արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի մեջ միայն արդյունաբերության համախառն արտադրանքի բաժինը կկազմի մոտավորապես 50 տոկոս։

✪ Աշխատանքի արտադրողականությունը պետական արդյունաբերության ճյուղերում 1956 թվականին, 1952 թվականի հետ համեմատած կաճի 70,4 տոկոսով։ Այսպիսով հնգամյա պլանով նախատեսված աշխատանքի արտադրողականության աճի ցուցանիշները հինգ տարվա ընթացքում 64 տոկոսով կգերազանցվեն։

✪ Առաջին հնգամյակի ընթացքում արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա մոտավորապես երկու անգամ, ընդ որում ժամանակակից արդյունաբերության արտադրանքը յուրաքանչյուր տարում կաճի 15,3 տոկոսով։



✪ Առաջին հնգամյակում, որն ավարտվում է մյուս տարի, ծավալվում է գերլիմիտային 800 արդյունաբերական օբյեկտների շինարարությունը։ Դրանցից 500-ը շարք կմտնեն արդեն այս հնգամյակում։ Կառուցվում են ավելի քան 2.000 միջին և մանր արդյունաբերական ձեռնարկություններ։

✪ Կառուցվում են նոր և ընդլայնվում արդեն գործող շատ մետալուրգիական ձեռնարկություններ։ Կառուցվում են, օրինակ, ավելի քան հարյուր խոշոր ածխահանքեր, 69 խոշոր էլեկտրակայաններ, որոնցից 32-ը արդեն շահագործման են հանձնված. ստեղծվում են նավթահանման նոր ձեռնարկություններ, մեքենաշինական գործարաններ և այլն։

✪ Սովետական Միությունը արտոնյալ պայմաններով Չինաստանին վարկ տրամադրեց 205 արդյունաբերական օբյեկտների կառուցման համար. միաժամանակ նա Չինաստանին օգնում է սարքավորումներով, տեխնիկական մասնագետներով և նյութերով։

✪ Արդյունաբերության համախառն արտադրանքի ընթացիկ տարվա պլանով նախատեսված ցուցանիշներն արդեն հասել են 1957 թվականի համար նախատեսված ցուցանիշներին։

✪ Ընթացիկ տարվա պլանով նախատեսված պողպատի, պողպատյա գլանվածքի, մետաղահատ դազգահների, ցեմենտի, ավտոդողերի, բամբակյա գործվածքի և հյուսվածքի, թղթի և ուրիշ ապրանքների ար-

տադրանքի ծավալը գերազանցում է 1957 թվականի համար սահմանված ցուցանիշները։

✪ 1957 թվականի վերջին Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան իր ուժերով, մեքենաներով և սարքավորումներով կարող է ապահովել տնտեսական շինարարության պահանջների մոտավորապես 60 տոկոսը։

✪ Ծանր արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ Չինաստանում ներկայումս արտադրվում է բեռնատար ավտոմեքենաներ, ռեակտիվ ինքնաթիռներ, 6—12 հազար կիլովատ ժամ հզորությամբ գեներատորներ և այլն։

✪ Արդյունաբերական արտադրանքի գլխավոր տեսակների արտադրության ծավալը կանցնի 1957 թվականի համար նախատեսված ցուցանիշներից՝ կարտադրվի 5.500 հազար տոննա պողպատ, 18 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 120 միլիոն տոննա ածուխ, 30 հազար հատ մետաղահատ դազգահներ, գեներատորներ՝ 340 հազար կիլովատ ժամ ընդհանուր կարողությամբ, 24 միլիոն քառակուսի մետր շինափայտ, 5.000 միլիոն հակ մանվածք, 800 հազար տոննա շաքար, 800 հազար տոննա թուղթ։

✪ Չինաստանում կառուցվել և շահագործման են հանձնվել Խարբինի չափող և կտրող գործիքների գործարանը, որը բաց է թողնում արտադրանքի 100-ից ավելի նոր տեսակներ, 1955 թվականի հունվարի 21-ից աշխատում է Շենյանի պնևմատիկ գործիքների գործարանը, որը անհրաժեշտ սարքավորում և գործիքներ է



մատակարարում ավելի քան 150 գործարանների, ֆաբրիկաների, հանքերի։ 1956 թվականի հուլիսի 13-ին Չունցին քաղաքում սկսեց աշխատել Չինաստանի առաջին ավտոգործարանը՝ տարեկան 30.000 բեռնատար ավտոմեքենա թողարկելու արտադրական կարողությամբ։ Շահագործման են հանձնված նաև Չինաստանում առաջին ջերմակայանը, շաքարի գործարանները Բաոտոույում, Ցզյումուսիում, տեքստիլ ֆաբրիկաները Պեկինում, Չժենչժոում և այլն։

✪ Հնգամյակի ընթացքում ներդրումների արժեքը տնտեսական շինարարության մեջ կազմում է 700 միլիոն լյան (մեկ լյանը հավասար է 31,2 գրամ ոսկու)։

✪ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում արտադրվում են նաև հացահատիկային կոմբայններ, էքսկավատորներ, բամբակի շարքացաններ և այլն։

✪ Կապիտալ շինարարության մեջ հինգ տարվա համար հատկացված ներդրումների 42,7 միլիարդ յուանի ընդհանուր գումարից առաջին երեք տարում իրացված է 35,5 միլիարդ յուան, սա նշանակում է, որ կատարված է պլանի 83 տոկոսը։

✪ Չինաստանում 1955 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքը կազմեց 349,6 միլիարդ ցզին (մեկ ցզինը հավասար է 0,5 կիլոգրամի), բամբակինը՝ 30.380 հազար դանի (մեկ դանը հավասար է 50 կիլոգրամի)։

✪ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1957 թվականին, 1952 թվականի համեմատությամբ

կաճի 23,3 տոկոսով։ 1953—54 թ. թ. տարերային աղետների հետևանքով համախառն արտադրանքի աճը բավականին ցածր էր, սակայն 1955 թվականին աճը կազմեց 14,8 տոկոս։ Չնայած այս տարի Չինաստանում նորից եղել են բավականին լուրջ ջրհեղեղներ, երաշտ և ուժեղ քամիներ, բայց հացահատիկային կուլտուրաների բերքը այնուամենայնիվ կարող է հասնել 1957 թվականի համար պլանավորված մակարդակին։ Երեք տարվա ընթացքում հերկված խոպանի տարածությունը հասել է 23 միլիոն մուի (մեկ մուն հավասար է $^1/_{15}$ հեկտարի)։

✪ 1956 թվականին ապրանքափոխանակության ծավալը 1952 թվականի համեմատությամբ կաճի 66,3 տոկոսով, իսկ արտահանումը և ներմուծումը կավելանա 65 տոկոսով։ Ներքին շուկայում մանրածախ առևտրի ծավալը ընթացիկ տարվա պլանով կավելանա 66,3 տոկոսով, համեմատած 1952 թվականի հետ։ Արտաքին առևտրի շրջանառությունը ընթացիկ տարում համեմատած 1952 թվականի հետ կաճի 65 տոկոսով։

✪ Մինչև երկրի ազատագրումը երկրում ներմուծման մեջ գլխավոր տեղը գրավում էին սպառման առարկաները։ Սկսած 1950 թվականից ներմուծման 90 տոկոսը կազմում են արտադրության միջոցները։

✪ Տպագրված գրքերի ընդհանուր տիրաժը ընթացիկ տարում հասել է 1 միլիարդ 600 միլիոն օրինակի։ Բուժող հիմնարկներում մահճակալների թիվը այս տարի



հասել է 339 հազարի, ազատագրության առաջին շրջանի 106 հազարի դիմաց։

✪ 1949 թվականի համեմատությամբ այս տարի բուհերում սովորող ուսանողների թիվը 116 հազարից հասել է 380 հազարի, միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը՝ 1.268 հազարից մինչև 5.860 հազարի, տարրական դպրոցներում՝ 24.390 հազարից մինչև 57.700 հազարի։ 1957 թվականին ուսանողների թիվը բուհերում կհասնի մոտավորապես 470 հազար մարդու։ Չինաստանի ակադեմիայի սիստեմում կլինեն 68 գիտահետազոտական հաստատություններ, այսինքն սահմանվածից 17 հաստատությունով ավելի։

✪ Աշխատանքի ապահովագրության, բժշկական սպասարկման, կուլտուր-լուսավորական միջոցառումների և բանվորների ու ծառայողների նյութական-կենցաղային պայմանների բարելավման համար կատարվող ծախսերը կազմում են աշխատավարձի տարեկան ֆոնդի 13 տոկոսը և չորս տարում մոտավորապես կազմում են 4,4 միլիարդ յուան։ Պետության կողմից բանվորների և ծառայողների համար կառուցված հանրակացարանների ընդհանուր տարածությունը այս տարվա վերջին կկազմի 50 միլիոն քառակուսի մետր։

✪ Չինաստանում կառուցված են այնպիսի երկաթուղային մագիստրալներ, ինչպիսիք են՝ Ցզինին—Էրլյան, Բաոցզի—Չենդու (երկարությունը 670 կիլոմետր է, ընդորում միայն թունելների և կամուրջների երկարությունը կազմում է 100 կիլոմետր) և այլն։

# ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՀԱԿԱՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԴԵՄ

Ֆ. ԽՎԱՆՈՎ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցած տարիներին հունգարական աշխատավորները կոմունիստների ղեկավարությամբ իրենց երկրում լիկվիդացրին բուրժուազիայի և կալվածատերերի տիրապետությունը, հաստատեցին ժողովրդա-դեմոկրատական կարգ, ոտք դրին սոցիալիզմի շինարարության ուղին և այդ ուղու վրա ձեռք բերեցին խոշոր հաջողություններ։ Բայց սոցիալիստական շինարարության ընթացքում Հունգարիայում պետական, տնտեսական և պարտիական շինարարության ղեկավարման մեջ թույլ տրվեցին ոչ քիչ կոպիտ սխալներ։ Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XX համագումարից հետո ժողովրդական դեմոկրատիայի երկրների եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաները սկսեցին վճռականորեն ուղղել անցյալում իրենց կողմից թույլ տրված սխալները, վերակառուցել և բարելա-



վել պարտիական ու պետական աշխատանքի մեթոդները։ Սակայն հունգարական նախկին ղեկավարությունը գործում էր ծայրահեղորեն դանդաղ և անվճռական, որն առաջ բերեց մասսաների լուրջ դժգոհություն։

Դրանից անհապաղ օգտվեց հունգարական և միջազգային ռեակցիան, որպեսզի հարձակվի ժողովրդա-դեմոկրատական կարգի վրա։

Իրադարձությունները Հունգարիայում սկսվեցին հոկտեմբերի 23-ին Բուդապեշտում ուսանող երիտասարդության ցույցով։ Այդ ցույցի մասնակիցները մեծ մասամբ ունեին խաղաղ մտադրություններ։ Նրանք հունգարական մայրաքաղաքի փողոցներն էին դուրս եկել կառավարությանը կոչ անելով հանուն ժողովրդական իշխանության ամրապնդման շահերի շտապ կերպով միջոցառումներ ձեռք առնել ուղղելու համար նախկինում թույլ տրված թերություններն ու սխալները։ Բայց այդ ցույցին իսկույն ևեթ հարեցին ընդհատակյա ռեակցիոն բանդաները, որոնք վաղուց արդեն պատրաստվում էին աշխատավոր ժողովրդի իշխանության դեմ հանդես գալու համար և սպասում էին մի այդպիսի հարմար դեպքի։ Զենք գործադրելով, նրանք ռազմական ընդհարման մեջ

մտան ժողովրդական ուսուցանությամբ հետ։ Հակահեղափոխ տարրերին հաջողվեց ստահոդ դեմագոգիկ կոչերով որոշ ժամանակ բնակչության զգալի մասսաներին, առանձնապես երիտասարդությանը, մոլորության մեջ գցել։ Բուդապեշտում սկսվեցին փողոցային մարտեր։ Այսպիսով խաղաղ ցույցը ռեակցիայի ջանքերով վերածվեց ժողովրդա-դեմոկրատական կարգի դեմ ուղղված ելույթի։

Այժմ, Հունգարիայում հակահեղափոխական խռովության ջախջախումից հետո, նորանոր փաստեր են հայտնաբերվում, որոնք հաստատում են, որ այն կազմակերպվել էր նախօրոք մշակված պլանի համաձայն և ունեն հեռու գնացող նպատակներ։ Այդ խռովության ոգեշնչողները՝ ԱՄՆ-ի և արևմտյան մյուս տերությունների ռեակցիոն շրջանները իրենց առջև խնդիր էին դրել Հունգարիայում լիկվիդացնել ժողովրդա-դեմոկրատական կարգը, ոչնչացնել աշխատավորների սոցիալիստական նվաճումները, հունգարական բանվորների և գյուղացիների վզին նորից նստացնել կալվածատերերին և կապիտալիստներին։

Ցունայտեդ պրես գործակալության հաղորդմամբ, արտաքին գործերի գծով սենատական հանձնաժողովի նիստում ամերիկյան հետախուզության ղեկավար Ալլեն Դալլեսը հայտարարել է, թե ինքը նախօրոք տեղյակ է եղել Հունգարիայում կատարվելիք իրադարձությունների մասին։



Հունգարիայի իրադարձությունների ընթացքում պարզվեց, որ այդ երկրում տապալված շահագործող դասակարգերի մնացորդներից միջազգային ռեակցիայի օգնությամբ ստեղծվել էր լավ սպառազինված և ակտիվ գործողությունների համար պատրաստ հակահեղափոխական ընդհատակ։ Այդ հակահեղափոխական ընդհատակյա բանդաներն էլ հանդիսացան ժողովրդական իշխանության դեմ կազմակերպված խռովության կորիզը։

Հակահեղափոխական զինված ելույթները միաժամանակ սկսվեցին Հունգարիայի մի շարք շրջաններում։ Դա պարզորեն խոսում է այն մասին, որ խռովարարները գործում էին միասնական, նախօրոք մշակված պլանով։ Խռովությունն սկսվելուց հետո իսկույն ևեթ արևմտյան սահմանից երկիր մտան Խորտիի նախկին ֆաշիստական բանակի սպաներից և զինվորներից կազմված զինված խմբերը, որոնք հիտլերյան Գերմանիայի ջախջախումից հետո փախել էին Արևմուտք։

Արևմտյան սահմանից Հունգարիա էին ուղարկվում մեծ քանակությամբ ավտոմատներ, գնդացիրներ, նռնակներ, և այլ զենքեր։ Ֆաշիստական-խորտիական բանդաները, որոնք համալրվել էին բանտերից բաց թողնըված քրեական հանցագործներով, երկրում ծավալեցին արյունալի սպիտակ տեռոր։ Նրանք ոչնչացնում էին թերթերի խմբագրությունները, պարտիական և աշխատավորների մյուս հասարակական կազմակերպությունները, թալանում էին պահեստներն ու խանութները։ Ֆաշիստական բանդիտները գազանորեն տանջամահ էին անում, գնդակահարում և կախում էին հազարավոր կոմունիստների, պրոգրեսիվ հասարակական գործիչների, հունգարական ազնիվ հայրենասերների։ Բուդապեշտի և հունգարական մյուս քաղաքների փողոցներում, հիշեցնելով անիծյալ հիտլերյան ժամանակները, բոցավառվում էին գրքերի խարույկները։ Ռեակցիոն ջարդարարները հրկիզում էին թանգարաններն ու թատրոնները, դպրոցներն ու գրադարանները, կործանում էին ֆաբրիկաներն ու գործարանները, որոնք ստեղծվել էին ժողովրդի ջանքերով։ Կանգ էին առնում արդյունաբերական և կոմունալ ձեռնարկությունները, քաղաքային և երկա-



թուղային տրանսպորտը։ Հունգարիայի տնտեսական և կուլտուրական կյանքը չլատվել էր։ Երկրում տիրում էր լիակատար քաոս և կամայականություն։

Իմրե Նագի կառավարությունը, որը կազմըվել էր հակառևոլյուցիոն խռովության հենց սկզբին, ի վիճակի չեղավ կարգ պահպանել երկրում։ Իշխանության գլուխ անցնելով, նա խոստացավ պայքար մղել ռեակցիայի դեմ, բայց գործնականում ռեակցիոն ուժերի ճնշման տակ մեկը մյուսի հետևից հանձնում էր իր դիրքերը, ճանապարհ հարթելով հակառևոլյուցիայի համար։

Հունգարիայում սոցիալիզմի բախտի համար վտանգավոր վիճակ ստեղծվեց։ Երկրի վրա կախվեց կապիտալիզմի վերականգնըման և ֆաշիստական կարգերի վերածնման լուրջ վտանգ։

Այդ ճակատագրական պահին երկրի առողջ, սոցիալիստական ուժերը, Հունգարիայի իսկական հայրենասերները վճռական միջոցառումներ ձեռնարկեցին, որպեսզի փրկեն ժողովրդի ապագան, փակեն ռեակցիայի և հակառևոլյուցիայի ուղին, պաշտպանեն աշխատավոր ժողովրդի իշխանությունը և նրա սոցիալիստական նվաճումները։ Իմրե Նագի կառավարության կազմում գտնվող կոմու-

նիստ մինիստրների մի խումբ համոզվելով այն բանում, որ այդ կառավարությունը ընկել է ռեակցիայի ճնշման տակ, դուրս եկավ նրա կազմից և այնպիսի կառավարության ստեղծման նախաձեռնություն ցուցաբերեց, որը ընդունակ եղավ պայքար կազմակերպել հակառևոլյուցիայի դեմ։ Այսպես ստեղծվեց Հունգարական Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական Կառավարությունը բանվորական շարժման ականավոր գործիչ կոմունիստ Յանոշ Կադարի գլխավորությամբ։

Նոր կառավարությունը հունգարական ժողովրդին կոչ արեց միավորվել հակառևոլյուցիայի դեմ պայքարելու, բանվորների ու գյուղացիների իշխանությունը և ժողովրդական դեմոկրատիայի նվաճումները պաշտպանելու համար։

Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարությունը Վարշավայի պայմանագրի համաձայն դիմեց Հունգարիայում գտնվող սովետական զորամասերի հրամանատարությանը, խնդրելով օգնել հունգարական ժողովրդին՝ ջախջախելու ռեակցիայի և հակառևոլյուցիայի սև ուժերը, վերականգնելու ժողովրդական սոցիալիստական կարգը, հանգստությունը երկրում։ Ընդ որում հունգարական կառավարությունը հայտա-



րարեց, որ երկրում կարգն ու հանգստությունը հաստատելուց հետո նա ՍՍՌՄ կառավարության և Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցների հետ բանակցությունների մեջ կմտնի Հունգարիայի տերիտորիայից սովետական զորքերը դուրս բերելու մասին։

Ժողովրդական Հունգարիայի սոցիալիստական ուժերը Սովետական Բանակի զորամասերի հետ միասին վճռական պարտություն մատնեցին ռեակցիայի ուժերին։ Հակառևոլյուցիոն խռովությունը Հունգարիայում լիկվիդացվեց։ Հունգարական ժողովուրդը հնարավորություն ստացավ վերադառնալ խաղաղ ստեղծագործական աշխատանքի ի բարօրություն իր սոցիալիստական հայրենիքի։

Այժմ բոլոր իսկական հունգարական հայրենասերները համախմբվում են Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական կառավարության շուրջը, իրենց ջանքերն ուղղում են նրա ծրագրի կենսագործման համար։

Այդ ծրագրում շարադրված են այն կարևոր դրույթները, որոնցով ղեկավարվում է կառավարությունը իր գործունեության մեջ։

Ծրագիրը նախատեսում է ապահովել երկրի ազգային անկախությունը և սուվերենի-

տեմը, ժողովրդա-դեմոկրատական սոցիալիստական կարգի պաշտպանությունը, երկրի առաջընթացը սոցիալիզմի կառուցման ուղիով։ Ընդ որում Հունգարիայի նոր կառավարությունը հաշվի է առնում երկրի ազգային առանձնահատկությունները և լիկվիդացնում է այն հակապարտիական և հակաժողովրդական սխալների հետևանքները, որոնք թույլ էին տվել նախկին հունգարական ղեկավարության կողմից։

Կառավարական ծրագիրը նախատեսում է աշխատավորների, առանձնապես բանվորների, կենսամակարդակի արագ և զգալի բարձրացում, բյուրոկրատիզմի վերացում, աշխատավորության բոլոր խավերի համար դեմոկրատիայի լայն զարգացում։

Ինչպես հայտարարեց Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական կառավարությունը, արտաքին քաղաքականության բնագավառում նա ձգտում է բոլոր սոցիալիստական երկրների հետ եղբայրական, սերտ հարաբերություններ հաստատել լիակատար իրավահավասարության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու հիման վրա և տնտեսական կապեր՝ փոխադարձ շահավետության ու փոխադարձ օգնության սկզբունքներով։ Կառավարական ծրագիրը նախատե-



սում է խաղաղ համագործակցություն բոլոր պետությունների հետ, անկախ նրանց սոցիալական կարգից և կառավարման ձևից։

Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական կառավարության ծրագիրը պաշտպանություն գտավ Հունգարիայի բոլոր իսկական հայրենասերների կողմից։ Հունգարական աշխատավորները, որոնք հակառևոլյուցիոն խռովության և ֆաշիստների գազանային կամայականությունների օրերին տեսան ռեակցիայի իսկական դեմքը և կռահեցին նրա նպատակները, պատրաստակամություն են հայտնում պայքարելու իրենց ժողովրդական կառավարության ծրագրի իրականացման համար։ Բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի ջանքերով աստիճանաբար վերականգնվում է երկրի նորմալ տնտեսական և հասարակական կյանքը, որը խանգարվել էր հակառևոլյուցիոն խռովության հետևանքով։ Վերսկսվում է հունգարական բանվոր դասակարգի մարքսիստական-լենինյան պարտիայի՝ Հունգարական Սոցիալիստական Բանվորական պարտիայի կազմակերպությունների և աշխատավորների մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությունը։

Օրեցօր ամրապնդվում է համգստությու-

նը և կարգը Հունգարիայում, կարգավորվում է խաղաղ կյանքը։

Հունգարիայում նորմալ կյանքին անցնելը տեղի է ունենում բարդ պայմաններում։ Վերջին իրադարձությունները հունգարական աշխատավորների շարքերում առաջացրին որոշակի շփոթություն և իրարանցում, որոնք հաճախ են իրենց զգացնել տալիս։ Դեռևս շարունակում է տեղ-տեղ ընդհանուր համգրստությունը խանգարելու փորձեր կատարել ջախջախված, ընդհատակ մտած ռեակցիան։ Հակառևոլյուցիոն տարրերը դիմում են տեռորի, դիվերսիաների, սաբոտաժի, դեմագոգիայի պրովոկացիոն շշուկների և գործադրում բոլոր միջոցները, որպեսզի խանգարեն բնակչության աշխատանքային գործունեության վերսկսումը, դրության լիակատար նորմալացումը երկրում։

Հունգարական ժողովրդի առաջ, որը ձեռնամուխ է եղել հակառևոլյուցիոն խռովության կողմից երկրին հասցված լուրջ վնասի վերացմանը, կանգնած են բարդ խնդիրներ, որոնց լուծումը կապված է մեծ դըժվարությունների հետ։ Բայց այդ դժվարությունները լիովին հաղթահարելի են և դրանք կհաղթահարվեն հունգարական ժողովրդի կողմից։



Իրենց սոցիալիստական նվաճումները պաշտպանող հունգարական աշխատավորների կողմում են բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխությունը և եղբայրական աջակցությունը։

Ի պատասխան հունգարական կառավարության խնդրանքի՝ Սովետական Միությունից, Չինաստանից, Ռումինիայից, Բուլղարիայից և մյուս սոցիալիստական երկրներից անընդհատ աճող չափերով Հունգարիա են ուղարկվում պարենամթերք, դեղորայք, վառելիք և արդյունաբերական հումք, որոնք տրվում են եղբայրական օգնության կարգով։

Ոչ մի կասկած չկա, որ հունգարական ժողովուրդը հենվելով այդ օգնության վրա, բոլոր երկրների աշխատավորների բարոյաքաղաքական աջակցության վրա, արագորեն կբուժի ռեակցիայի կողմից հայրենիքին հասցված վերքերը և հաստատակամորեն առաջ կընթանա սոցիալիզմի կառուցման ուղիով։

Հակառևոլյուցիայի ուժերի դեմ հունգարական աշխատավորների հաղթանակը ուրախացնում է բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդներին։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ հասարակայնությունը լիովին հավանություն են տալիս Սովետական Միության դիրքին, որը հունգարական ժողովրդին օգնության հասավ՝ նրա համար ծանր օրերին։ Արտահայտելով վեց հարյուր միլիոնանոց չին ժողովրդի զգացմունքները, «Ժենմինժիբաո» թերթը հայտարարեց. «Իրադարձությունները Հունգարիայում մեկ անգամ ևս ամենայն ակներևությամբ հաստատեցին մեծ Սովետական Միության հետ բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդների մեծ բարեկամության կարևորությունը»։ Որքան ամուր է սոցիալիզմի երկրների եղբայրական բարեկամությունը և համագործակցությունը, որոնք հիմնված են հավասարության, միմյանց շահերի և իրավունքների փոխադարձ հարգման լենինյան սկզբունքների վրա,— այնքան հաջող է տնտեսական շինարարությունը, հուսալի է յուրաքանչյուր առանձին սոցիալիստական երկրի և սոցիալիզմի ամբողջ համաշխարհային սիստեմի անվտանգությունը։

Հունգարիայում հակառևոլյուցիոն ավանտյուրայի ձախողումը առաջ բերեց միջազգային ռեակցիայի կատաղության ալիք։



Արևմտյան երկրներում բարձրացված է աղմըկալի պրոպագանդիստական կամպանիա ուղղված սոցիալիստական երկրների դեմ։ Այդ կամպանիայի կեղտոտ նպատակներին ծառայեց նույնիսկ Միավորված Ազգերի Կազմակերպության ամբիոնը։ Հակառակ Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վճռական բողոքներին և մյուս սոցիալիստական երկրների առարկություններին, արևմտյան տերությունները ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեային փաթաթեցին այսպես կոչված «Հունգարիայի դրության մասին» հարցը։

Արևմտյան պետությունների այդ մանևրի նպատակն այն է, որպեսզի համաշխարհային հասարակայնության ուշադրությունը շեղեն Եգիպտոսի դեմ անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիայից։

Որքան էլ որ կատաղի միջազգային ռեակցիան, նա անկարող է շրջել պատմության անիվը, կանգնեցնել ժողովուրդների շարժումը դեպի լավագույն ապագան։

Հունգարիան եղել է, կա և կմնա ազատ, անկախ և իրավահավասար սոցիալիստական երկրների ընտանիքում։

# ՍՈՎԵՏԱ-ԼԵՀԱԿԱՆ ԲԱՆԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական Կառավարությունը հետևողականորեն կենսագործում են ՍՄԿՊ XX համագումարի որոշումը ՍՍՌՄ-ի կապերը և բարեկամությունը սոցիալիստական լագերի մյուս երկրների հետ ամեն կերպ ընդլայնելու և է՛լ ավելի ամրապնդելու մասին։ ՍՄԿՊ Կենտկոմը և Սովետական կառավարությունը վճռականորեն պայքարելով անհատի պաշտամունքի դեմ, նորից և նորից ընդգծում են, որ սոցիալիստական երկրների հարաբերությունները պետք է հիմնվեն լիակատար իրավահավասարության, տերիտորիալ ամբողջականությունը, պետական անկախությունն ու սուվերենիտետը փոխադարձաբար հարգելու և միմյանց ներքին գործերին չմիջամտելու լենինյան սկզբունքների վրա։*

*ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների հարաբերություններում տեղ գտած*



*սխալների ու թյուրիմացությունների անհապաղ վերացման և սոցիալիստական լագերի երկրների փոխհարաբերությունները է՛լ ավելի ամրապնդելու գործում մեծ նշանակություն ունեցավ Սովետական կառավարության 1956 թվականի հոկտեմբերի 30-ի Դեկլարացիան «Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների բարեկամության և համագործակցության զարգացման ու հետագա ամրապնդման հիմունքների մասին»։*

*Հենց այդ Դեկլարացիայի ոգում համապատասխան տեղի ունեցան ՍՄԿՊ Կենտկոմի ու Սովետական Միության կառավարության դելեգացիայի և Լեհաստանի Միացյալ Բանվորական պարտիայի Կենտկոմի ու Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարության դելեգացիայի բանակցությունները, որոնք սկսվեցին 1956 թվականի նոյեմբերի 15-ին և ավարտվեցին նոյեմբերի 18-ին։ Սովետա-լեհական բանակցություններում դրսևորվեց երկու կողմերի անհողդողդ կամքը՝ է՛լ ավելի ամրապնդելու եղբայրական բարեկամությունը սովետական և լեհ ժողովուրդների միջև և երկու երկրների հարաբերությունները կառուցելու իրավահավասա-*

րության ու փոխադարձ օգնության լենինյան սկզբունքների հիման վրա։

Բանակցությունների ընթացքում պարզվեց, որ երկու կողմերն էլ նույնանման տեսակետ ունեն միջազգային հիմնական հարցերի նկատմամբ։ Երկու կողմերի դելեգացիաները միահամուռ կերպով դատապարտեցին անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան Եգիպտոսի դեմ և պահանջեցին անհապաղ կատարել ՄԱԿ-ի արտակարգ սեսիայի որոշումը Եգիպտոսում կրակը դադարեցնելու և ագրեսորների զորքերը այդ երկրի տերիտորիայից դուրս բերելու մասին։ Քննարկելով արդի միջազգային դրության հարցը, կողմերը այն եզրակացության հանգեցին, որ միջազգային դրության լարվածության թուլացմանը կարելի է հասնել զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման, օտար տերիտորիաներում ռազմական բազաների վերացման, ատոմային և ջրածնային զենքի արգելման միջոցով։

Անդրադառնալով հունգարական իրադարձություններին, երկու դելեգացիաները հույս հայտնեցին, որ հունգար ժողովուրդը կպաշտպանի ժողովրդա-դեմոկրատական կարգի նվաճումները միջազգային և ներքին ռեակցիայի ոտնձգություններից, իսկ



ՍՍՌՄ-ը և Լեհաստանը այդ գործում անհրաժեշտ օգնություն և աջակցություն կցուցաբերեն Հունգարիայի Ռևոլյուցիոն Բանվորա-Գյուղացիական կառավարությանը։

Բանակցությունների ժամանակ հատուկ քննարկման ենթարկվեցին սովետական և լեհական պետությունների միջև ստեղծված հարաբերությունները։ Այդ կապակցությամբ նշվեց, որ երկու պետությունների հարաբերությունների հետագա ամրապնդման գործում վիթխարի նշանակություն ունի Սովետական կառավարության 1956 թվականի հոկտեմբերի 30-ի դեկլարացիան, որը լիովին համապատասխանում է Լեհական Միացյալ Բանվորական պարտիայի Կենտկոմի վերջերս կայացած 8-րդ պլենումի որոշումներին։ Բանակցությունները հաստատեցին, որ «Սովետա-լեհական դաշինքը, որով հավասարապես շահագրգռված են ինչպես սովետական, այնպես էլ լեհ ժողովուրդները, նրանց անվտանգության հուսալի երաշխիքն է»։

Բանակցությունների ընթացքում կողմերը մեծ ուշադրություն դարձրին երկու երկրների միջև տնտեսական հարաբերությունների ամրապնդման և հետագա զարգացման հարցի վրա։ Դրա շնորհիվ կարգավորվեցին ֆինանսական որոշ հաշիվներ, որոնք մնացել էին

անցյալից։ ՍՍՌՄ կառավարությունը համաձայնվեց 1957 թվականին Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկային մատակարարել 1 միլիոն 400 հազար տոննա հացահատիկ և տալ 700 միլիոն ռուբլի գումարով երկարատև վարկ՝ Սովետական Միության կողմից Լեհաստանին մատակարարվող ապրանքների դիմաց վճարելու համար։

Բանակցությունների ժամանակ պայմանավորվածություն ձեռք բերվեց Լեհաստանի տերիտորիայում սովետական զորամասերի գտնվելու մասին։ Ի նկատի ունենալով, որ մինչև այժմ չի հաջողվել համաձայնեցված որոշումների հասնել, որոնք երաշխավորեին եվրոպական պետությունների անվտանգությունը վերածնվող գերմանական միլիտարիզմից, երկու երկրների դելեգացիաները գտան, որ Սովետական զորամասերի ժամանակավոր գտնվելը Լեհաստանի տերիտորիայում նպատակահարմար է և համապատասխանում է միջազգային համաձայնագրերին։ Որոշվեց, որ միջազգային իրադրության փոփոխմանը զուգընթաց լեհական և սովետական կառավարությունները կոնսուլտացիա կանեն սովետական զորքերի՝ Լեհաստանի տերիտորիայում գտնվելու, նրանց քանակի և կազմի մասին։ Որոշվեց նաև, որ Լեհաստա-



նի տերիտորիայում Սովետական զորքերի գտնվելը ոչ մի չափով չպետք է շոշափի Լեհաստանի սուվերենիտետը և առիթ տա նրա ներքին գործերին խառնվելու համար, իսկ այդ զորքերի Լեհաստանում գտնվելու հետ կապված մյուս հարցերը կկարգավորվեն կողմերի փոխադարձ համաձայնությամբ։ Երկու դելեգացիաները միասնական կարծիքի հասան նաև այս կամ այն պատճառով Սովետական Միությունում գտնվող և Հայրենիք՝ Լեհաստան վերադառնալու ցանկություն ունեցող լեհերի հարցի կարգավորման և երկու երկրների միջև գիտական, կուլտուրական, սպորտային ու մյուս կապերն ավելի ընդլայնելու ու ամրապնդելու խնդրի կապակցությամբ։

Բանակցությունների վերջում հրապարակվեց համատեղ հայտարարություն, որը ստորագրեցին սովետական կողմից՝ ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար Ն. Ս. Խրուշչևը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինը, լեհական կողմից՝ Լեհական Միացյալ Բանվորական պարտիայի առաջին քարտուղար Վլադիսլավ Գոմուլկան ու Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի Մինիստրների Խորհրդի նախագահ Յու. Ցիրանկևիչը։

Բանակցությունների ամբողջ ընթացքն ու արդյունքները, ինչպես հայտարարեց Վ. Գոմուլկան, հանդիսանում են Լեհաստանի և Սովետական Միության, ինչպես նաև Լեհական Բանվորական պարտիայի ու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի միջև հարաբերությունների պրակտիկայում արմատական բեկման արտահայտությամբ։

Սովետական և լեհ ժողովուրդները, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդները ջերմորեն ողջունեցին սովետա-լեհական բանակցությունների արդյունքները, որոնք ավելի ամրապնդեցին երկու երկրների եղբայրական կապերը։

Սոցիալիզմի և խաղաղության լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը, այժմ միասնական է ու ամուր, քան երբեք։ Ոչ մի թշնամու չի հաջողվի սասանել այդ լագերի միասնությունը և այդ ուղղությամբ ամեն մի փորձ նույնպիսի անփառունակ վախճան կունենա նրա ոգեշնչողների ու կազմակերպիչների համար, ինչպես այդ եղավ ժողովրդական Հունգարիայում։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

